# ՀԱՅ ԳԻՒՂԱՑՈՒ ՍԵՒ ՕՐԸ

ԳՐԵՑ

**Ս. ՄԵԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ**

*(Արտատպուած «ՄՈՒՐՃ» ամսագրից)*

ԹԻՖԼԻՍ
ՏՊԱՐԱՆ Մ. Դ. ՌՕՏԻՆԵԱՆՑԻ
1890

# ՀԱՅ ԳԻՒՂԱՑՈՒ ՍԵՒ ՕՐԸ

ԳՐԵՑ

Ս. ՄԵԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ

(Արտատպած «ՄՈՒՐՃ» ամսագրից)

ԹԻՖԼԻՍ
ՏՊԱՐԱՆ Մ. Դ. ՌՕՏԻՆԵԱՆՑԻ
1890





# ՀԱՅ ԳԻՒՂԱՑՈՒ ՍԵՒ ՕՐԸ

Գ Ր Ե Ց

Ս. ՄԵԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ

(*Արտատպած «ՄՈՒՐՃ» ամսագրից*)

ԹԻՖԼԻՍ
ՏՊԱՐԱՆ Մ. Դ. ՌՕՏԻՆԵԱՆՑԻ
1890





# ՀԱՅ ԳԻՒՂԱՑՈՒ ՍԵՒ ՕՐԸ

## Ա.

Աշուն էր. օրը կիւրակի: Զինջ կապուտակի վերայ թափառում էր աշնան մեղմահայեաց արեգակը. նա իւր բարի, քաղցր աչքերը գցել էր Անգեղակոթ գիւղին, որի վերայ մեղմիկ խաղում էր հովը:

Կիւրակի օր—ահա՛ գիւղացոց ամենաուրախ օրը. նոքա բոլորեքեանք՝ ծեր ու տղամարդ, երիտասարդ ու երեխայ, հարսն ու աղջիկ դուրսն էին գտնւում, և գիւղը ներկայացնում էր մի կենդանի պատկեր: Գիւղացիք խումբ խումբ այստեղ-այնտեղ, սորա-նորա պատի տակ, որը՝ նստած գտակը մի կողմը դրած տ ր խ ա տ ա ն ն էր քակում, նորից պինդ կապում, որը տրեխը հանում, նոր հագնում և հ ե ս-կ ի ն ե ր ը ամուր կապում, որը կանգնած ձեռափայտին յենած ամբողջ մարմինը՝ խօսում, ասում էին բարձրաձայն միմեանց ժամանակ չը տալով. ինչպէս ասում են՝ հայի չէն էին չինել: Փոխուած էին գիւղացիք. բոլորեքեանք էլ, կարծես, մի բան էին գտած, իւրաքանչիւրը իւր մտքում «կորկոտ գցած էր երևում:

Դէպի միւս կողմը նայենք. պատն ի վեր կանգնած էին գիւղացի երիտասարդները. մէկը աննպատակ տաշ էր անում՝ դանակը ձեռին, միւսը ձեռը գօտին էր անցրած, աջ ոտը դէպի առաջ դրած, մի ուրիշը ընկերի ուսին էր կռթնած, չորրորդը գտակն էր թափ տալիս, մի խօսքով ամէն մէկը մի դիրք ունէր բռնած. դոքա լսում էին իրանց ընկերոջ, որը, ինչպէս երևում էր, շատ հետաքրքիր բան էր պատմում. ամէնքն էլ ուրախ էին և, կարծես, ամէն մէկը դոցանից իւր ապագան վճռել էր և մնում էր շուտափոյթ գործադրելը։

Աչքներս վեր բարձրացնենք. տանիքները կանաչ-կարմրին էին տալիս. հարսն ու աղջիկ էին դոքա, որոնք խօսում էին հա խօսում. դոցա նիւթը անսպառելի աղբիւրից էր հոսում. դէմքերի արտայայտութիւնը հաստատ ոչինչ չէր ցոյց տալիս. յեղեղուկ թռռ-արև սրտերը մէկ ուրախանում, մէկ տրտմում էին։

Վազվզո՛ց, աղաղա՛կ... դոքա երեխաներն էին. ի՛նչպէս նոքա վազվզում են շարան-շարան, շունծեծելով, իրար վայր գլորելով. մի ուրիշ տեղ իբրև թէ օձ էին պար ածում՝ մի երկար չուան քաշ տալով և մանրիկներին վախեցնում։

Գիւղը կենդանի էր. տէր-Մարկոսն էր պակաս. ահա նա էլ տնից դուրս եկաւ, աչքերը տրորեց, ձեռքը տարաւ միրուքի տակը դէս-դէն արաւ, գաւազանը պատն ի վեր դրաւ, փէշերը յետ քաշեց, կռացաւ, ձեռքը տարաւ իւր խոր գրպանից՝ ինչպէս

անտակ հորից՝ քթախոտի տուփը հանեց, մի առանձին բաւականութեամբ կարճլիկ ու հաստ մատերով կողքերին և երեսին խփեց, բացարեց և մի լաւ քաշ վերցրեց, ախորժակով քաշեց՝ կէսը միրուքի վերայ թափելով, կէսը քթի ծայրին թողնելով. Փարաջի տուտերը իրար քաշեց, առաւ գաւազանը և դէպի եկեղեցու բակը գնաց։

Տէր հօրը տեսան գիւղի ծերերը և քթախոտի հոտի վերայ ցածից դէպի նա շտապեցին. Նոքա «օրհնեա՛ տէր» ասելով մի մի քաշ քթախոտ վերցրին և նստեցին ալևոր ալևոր զրոյց էին անում։

Ահա այսպէս անգեղակոթցիք բոլորեքեանք էլ դուրսն էին գտնւում, երբ փողոցներով անցան Բագուից նոր եկած անգեղակոթցի մշակներից մի քանիսը, որոնց մէջն էր և Բէգլարի տղայ Ստեփանը, որ երեսունին մօտ ամուսնացած տղամարդ էր։ Ստեփանը երկու օր էր, որ Հացից-Ջրից կտրուած, տնից-տեղից հեռացած, մշակների յետեւից էր քաշ քաշ լինում, որ ինչ է Բագուայ մասին նրանց պատմածները լսի։ Նա այնպէս էր յափշտակւել, վերացել, վառւել Բագու քաղաքով, որ ման գալիս շատ անգամ ինքն իրան Բագու էր կարծում, իսկ երբեմն էլ Բագուից եկած գիւղը նոր-նոր հագուստներով և արծաթի գօտիով. բայց հէնց որ այդ խաբուսիկ պատկերը հեռանում էր նրանից և իրան տեսնում էր կոշտ բրդի չուխան հագին, տրեխը ոտներին՝ նա սաստիկ ամաչում էր, ուզում էր փախչել, հեռանալ

նրանցից, նրանց մէջ չ՚երեւալ, բայց հետաքրքրութիւնը թոյլ չէր տալիս, ականջները սրած էր պահում, որ նրանց պատմածներից մի ամենափոքր կէտն անգամ տափը չը գցի։

Մշակներից ամեն մէկը ուզում էր այդ օրը, քանի որ գիւղացիները դուրս էին գնում, մի լաւ ման գալ, իրանց ցոյց տալ, հայրենակիցների աչքերը շլացնել։ Մշակները լաւցած, գլուխները սանրած էին, հագած ունէին բաճկոնակներ արխալուղի վրայով, մէջքները արծաթի գօտիներ ածած, գլխներին քաղաքացու գտակ էր, ոտներին ճիթկաւոր պապղուն կօշիկներ։ Ոտից ցգլուխ նոր էին հագնել. նոր էր դոցա երիտասարդական հագուստը, առաջի անգամն էին ծալը բացել։ Դրանց վերայ անծանօթ նայողը զարմանալով կ՚ասէր. «Մի՞թէ անգեղակոթցի ծերերը սովորութիւն ունին երիտասարդի պէս զարդարուել, պճնուել»։ Նոցա նիհար և խորշոմներով ծածկուած երեսկահատն ու կորացած մէջքը այդ միայն իրաւունք էին տալիս ասելու։

Վեց հոգի էին ման եկողները. երկուսը երկարահասակ էին և սապատաւոր ուղտերի էին նմանում, իսկ չորսը կարճահասակ, վտիտ մարմիններով, որոնք նմանում էին երկար ու ձիգ տարիներ գետնափոր բանտերում բանտարկուածներին, ուր զրկուած են եղել արեւի կենսատու ճառագայթներից։

Մշակների աչքներումն ընկան կտուրների վերայ կանաչ-կարմրին տուող հարսն ու աղջիկները և ուռած

ուռած քայլերը դէպի այդ տեղ ուղղեցին։ Բաքախում էին դոցա սրտերը, չը գիտէին իրանց ի՛նչ տեսակ ձև տան, որ նոցա զարմացնեն ու ապշեցնեն. մէկ իրանց հագուստին էին նայում, մէկ ճիթկաւոր կօշիկներին՝ արդե՞օք փոշի չի նստել և փայլը կորցրել, մէկ ընչացքներն էին ոլորում, սղալում, մէկ բաճկոնակների փեշերը յետ տանելով ձեռքերը արծաթի գօտիներն էին անցնում, կարծես ուզում լինէին ասել. «Արծաթէ գօտի ունինք ածած, լա՛ւ նայեցէք»։ Նոքա նայում էին Հարսն ու աղջկերանց, իրար հետ խօսում, ծիծաղում և ամէն մէկը իրան մի բէգ էր կարծում։

Ստեփանը այդ ժամանակ աչքերը գետնին գցած, քիթ ու մռութը կախ տուած՝ ուզում էր մի կերպ ծլկուի, տափոմն անցնի, որ կանայք իրան չը տեսնեն և երբ այդ դրութեան մէջ յանկարծակի իւր կնոջը տեսաւ կանանց խմբի մէջ՝ աւելի և աւելի սրտնեղուեց ասելով. «Նշանածս հիմա երանի է տալիս սրանց, իսկ ես ինչո՞վ եմ պակաս սրանցից. մի՞թէ ես էլ չեմ կարող այդպէս հագնուել գալ, որ իմ նշանածը պտածակից չը նայի։ Միամիտ կա՛ց, Թագուհի՛, մի քիչ էլ համբերի՛ր, այսօր բրդի չուխով եմ ման գալիս, վաղը դու տես ինչո՛վ ման կը գամ և քեզ ի՛նչպէս կը զարդարեմ. Բագո՛ւն սաղ լինի...»։ Հարսները զանդրուկները գցեցին և զանդրուկների տակից էին նայում. աղջկերքը կողքի կանգնեցին, աչքերի անկյունով էին նայում, իսկ միջահասակ կանայք ուղ-

ղակի կանգնած երես առ երես։ Հարսների արտայայտութիւնը պարզորոշ ասում էր. «Ի՞նչ կը լինէր իմ ամուսինն էլ Բագու լինէր և այսպէս զարդարուած գար»։ Հասած աղջկերանց ամօթխածութեան թանձր քօղով ծածկուած արտայայտութիւնը երևան հանեց իրանց սրտի եօթը կարպով կապած գաղտնիքը. «Տեսնես դոքա եկել են պսակուելո՞ւ». իսկ միջահասակ կանանց սրտերը նախանձով լցուեց. մէկը մտքումը ասում էր. «Ինչո՞ւ ես էլ մեծ տղայ չ՚ունենամ, չ՚ուղարկեմ Բագու և այսպիսի օրը պտածակից չը նայեմ ուրիշների տղաներին». իսկ ունեցողները ասում էին. «Իմ տղաս էլ կ՚ուղարկեմ». և շտապում էր, որ ձեռքովը գար՝ հէնց այդ րոպէին իսկոյն և եթ կ՚ուղարկէր, որ վաղը անպատճառ մօտը լինի փող աշխատած և լաւ հագուստում։

---

Մշակները յետ յետ նայելով անցան։ Կանայք խումբ խումբ հաւաքուեցան և քիթ քթի տուած խօսում էին.

—Աղջի՛, տեսնո՞ւմ ես, խօսքը բաց արաւ Նողերը, երեկուայ գիւղացի տղաներն են է՛, գնացին Բագու, եկան մարդ դարձած. դու նրանց մի ծաղիկ-ծաղիկ շորերին նայի՛ր, ասես նոր են աղի տակից դուրս եկած. արծաթի զօտիներին մտիկ տո՛ւր, մի գրւանքայ արծաթից կարծես լինի շինուած. պապղուն կօշիկնե՛րը, պապղուն կօշիկնե՛րը, մարդու

խելք է գնում։ Մեր կոշտ բառն էլ են փոխել, քաղաքավարի են խօսում։ Երանի՜ ձեր մօր աչքերին, էլ ի՞նչ ցաւ ու հոգս պիտի ունենան… Ա՛յ, ա՛յ այն ծիգ ծիգ տղան տեսնո՞ւմ էք՝ Մակունց Գեալուն տղայ Դանիէլն է, որ ձեռքով մի բան չէր գալիս…

—Վի՛, աղջի՛, նա՛ է, խօսքը կտրեցին մի քանիսը, ի՞նչպէս փոխուել, ի՞նչպէս զարդարուել է։

—Հա՛, այն էի ասում, շարունակեց Շողերը, որ դորա ձեռքով մի բան չէր գալիս. հայրը ամենայն օր էլ անէծք-պղէծք չէր մնում թափում էր գլխին. դէ ե՛կ հիմա հարցրո՛ւ,—գնաց Բագու, շնորհքին, մաքուր, քաղաքավարի մարդ է դարձել։

—Աղջի՛, խօսքդ էլ կտրում եմ, վրաց բերաւ Մարիամ աքէրը, բա գիւղումը մնալով կարծում ես մեր տղայքը մարդ պիտի դառնա՞ն. մեզնման յիմար չեն, որ սուս անեն, տղաները պահեն տաւարած, վար անող շինեն. ա՛յ նրանց հայրերն են խելօք է՛, ուղարկեցին Բագու իրանց տղաները, այժմ եկել են՝ ջիբները տրաքում, մնդուկները խլթխլթում. էլ ի՞նչ ասես չեն բերել։ Երէկ գնացել էի քրոջս տունը, նրանց հարևանն է այն մէջ տեղի կապոյտ շորերով տղան…։

—Խաչունց Մկրտումէն տղայ Սաքա՞նը, հարցրին այս և այն կողմից։

—Հա՛, հիմա Սէրգի են ասում. Բագու են փոխել անունը. ով որ Սաքան է կանչում, ասում են, նեղանում է։ Հա՛, այն էի ասում, ինչե՛ր էին պատ-

ղակի կանգնած երես առ երես։ Հարսների արտայայտութիւնը պարզորոշ ասում էր. «Ի՞նչ կը լինէր իմ ամուսինն էլ Բագու լինէր և այսպէս զարդարուած գար»։ Հասած աղջկերանց ամօթխածութեան թանձր քօղով ծածկուած արտայայտութիւնը երևան հանեց իրանց սրտի եօթը կապով կապած գաղտնիքը. «Տեսնես դոքա եկել են պսակուելո՞ւ». իսկ միջահասակ կանանց սրտերը նախանձով լցուեց. մէկը մռքումը ասում էր. «Ինչո՞ւ ես էլ մեծ տղայ չ՚ունենամ, չ՚ուղարկեմ Բագու և այսպիսի օրը պտածակից չը նայեմ ուրիշների տղաներին». իսկ ունեցողները ասում էին. «Իմ տղաս էլ կ՚ուղարկեմ». և շտապում էր, որ ձեռքովը գար՝ հէնց այդ բոպէին իսկոյն և եթ կ՚ուղարկէր, որ վաղը անպատճառ մօտը լինի փող աշխատած և լաւ-հագուստում։

---

Մշակները յետ յետ նայելով անցան։ Կանայք խումբ խումբ հաւաքուեցան և քիթ քթի տուած խօսում էին.

—Աղջի՛, տեսնո՞ւմ ես, խօսքը բաց արաւ Նողերը, երեկուայ գիւղացի տղաներն են է՛, գնացին Բագու, եկան մարդ դարձած. դու նրանց մի ծաղիկ-ծաղիկ շորերին նայի՛ր, ասես նոր են ասղի տակից դուրս եկած. արծաթի զօտիներին մտիկ տո՛ւր, մի գրւանքայ արծաթից կարծես լինի շինուած. պապղուն կօշիկնե՛րը, պապղուն կօշիկնե՛րը, մարս

խելք է գնում։ Մեր կոշտ բառն էլ են փոխել, քաղաքավարի են խօսում։ Երանի՛ ձեր մօր աչքերին, էլ ի՛նչ ցաւ ու հոգս պիտի ունենան... Ա՛յ, ա՛յ այն ձիգ ձիգ տղան տեսնո՞ւմ էք՝ Մակունց Գեալուն տղայ Դանիէլն է, որ ձեռքով մի բան չէր գալիս...

—Վի՛, աղջի՛, նա՛ է, խօսքը կտրեցին մի քանիսը, ի՛նչպէս փոխուել, ի՛նչպէս զարդարուել է։

—Հա՛, այն էի ասում, շարունակեց Ծողերը, որ դորա ձեռքով մի բան չէր գալիս. հայրը ամենայն օր էլ անէծք-պղէծք չէր մնում թափում էր գլխին. դէ ե՛կ հիմա հարցրո՛ւ,—գնաց Բագու, շնորհքին, մաքուր, քաղաքավարի մարդ է դարձել։

—Աղջի՛, խօսքդ էլ կտրում եմ, վրայ բերաւ Մարիամ աքէրը, բա. գիւղումը մնալով կարծում ես մեր տղայքը մարդ պիտի դառնա՞ն. մեզնման յիմար չեն, որ սուս անեն, տղաները պահեն տաւարած, վար անող շինեն. ա՛յ նրանց հայրերն են խելօք է՛, ուղարկեցին Բագու իրանց տղաները, այժմ եկել են՝ ջիբները տրաքում, սնդուկները խլթխլթում. էլ ի՛նչ ասես չեն բերել։ Երէկ գնացել էի քրոջս տունը, նրանց հարեւանն է այն մէջ տեղի կապոյտ շորերով տղան...

—Խաչունց Մկրտումէն տղայ Սաքա՞նը, հարցրին այս և այն [illegible]մեկը.

—Հա՛ [illegible]ղի են ասում. Բագու են փոխել ան[illegible]աքան[illegible]ում, ասում են, ն[illegible] էի [illegible]ր էին պատ-

մում, ի՛նչ, ի՛նչ շորեր է բերել մօրը ու քուերտանց՝ համար, ի՛նչ ընծաներ բարեկամների համար. ասում են՝ նշան պիտի՛ դնի, նշանի պատրաստութիւնն էլ է բերել. փո՛ղ՝ հօ էլ խօսք չը կայ։

—Դէ՛ էլ նորա մօր առաջ կը կարողանանք խօսել, խօսքի տուտը բաց արաւ Նարգիզը, էլ մեզ մարդի տեղ կը դնի՛. մինչև տղի գալը մեծ մեծ խօսելով էր ման գալիս քիթը ցցած, այժմ աստղերի տեղովը պիտի թռչկոտի։ Մեր մարդին ի՛նչ ասեմ, ինչ դառնայ, դարձաւ մի կողմը, ասացի՝ ա՛յ մարդ, թող մեր երեխային էլ դոցա հետ ուղարկենք. չէ՛ որ չէ, չէ, ասաց ու սուեց կանգնեց. հիմա եկած կը լինէր, մեր աչքն էլ կը տեսնէր կ'ուրախանար։

—Էլ ասում ես ի՛նչ դառնայ, վրայ բերաւ Շողերը, բաղդաւորութեան մէջ են ընկել, աղքատութեան քարը գլորեցին դէնը։ Փողը՝ փող, մարդավարութիւնը՝ մարդավարութիւն. էլ ի՛նչ ես ուզում։ Հա՛, մոռացայ ասել, Սաքանը խանութ պիտի բանայ այստեղ, ապրանք էլ է բերել։

—Դէ ա՛յ տափ, պատուի՛ մտնեմ ներս էլի, նախանձով կուրացած ասաց Հերիքնազը, բա չորս տղայ ունենամ, այսպիսի օրը ձեռքերս ծոցումս մնամ պուշկած նայելի՞ս, ախր ակի իմ Դանու եղունգը կարժե՞ն նրա՛նք, որ նա մնայ տանը, տաւար պահի, վար անի ձեռքը կոշտացած, նրանք գնան մարդ դառնան, մեր տղերանց հետ էլ չ'ուզենան թէ խօսեն։

—Էլ մի՛ ասի, Աստուած մեր խելքը առել է,

ախր մի խելքը ամառ ձմեռ ի՛նչ անի. է՛ աշխարհս տրաքւած էլ Ուզունից, Շաղաթից, Փռնակոթից չես առում հէնց է որ գնում են հա գնում դարտակ ջիբով, դառնում լիքը ջիբով. գնում են գիւղացի, դառնում են քաղաքացի. մենք միայն հէնց գիւղացի՛, գիւղացի՛ պիտի մնանք հա մնանք։

Աղջկերքը ոչինչ չէին խօսում, միայն նորահարսների կողքը կպած ամենայն ուշադրութեամբ լսում էին նրանց ասածն ու խօսածը։ Նրանք էլ ոգեւորւած էին Բագու քաղաքով, նրանց մտքովն էլ շատ բաներ էր անցնում. մէկը մտածում էր. «Եղբայրս գնացած լինէր, բերած կը լինէր ինձ համար լաւ լաւ բօղչամիջի շորեր»։ Միւսը. «Երանի՛ ես էլ եղբայր ունենայի»։

Կանանց մեծամասնութիւնը, որոնք տղաներ ունէին, ուրախ էին. մտածում էին. «Կ՚ուղարկենք, մենք էլ երջանիկ կը լինինք ինչպէս նրանք». իսկ նրանք որոնք այդ բաղդաւորութիւնից զրկւած էին, ոչինչ չէին կարողանում խօսել, մի բան կորցրածի պէս դէս-դէն էին տատանւում։

Մշակները հեռացան կանանց աչքերից. նոքա միւս փողոցում տեսնելով խմբւած երիտասարդներին՝ դէպի այդ կողմը ծռւեցան, նոցա էլ զարմացնելու։

—Սրանց՝ մուժիկներին նայէ՛ք, ասաց Սաքանը, ասես տաւար լինին, տանես Բագու կը խրանեն՝ ծովը կը թափեն հա՛. մի օր չեն կարող մնալ։

—Տօ՛, ակի փողոցներով կա՛րող են գնալ, Փայտոնների տակ կը մեռան, պատասխանեց Դանին։

Այսպէս խօսելով, ընչացքները ոլորելով և արհամարհական հայեացքով մօտեցան խմբուած երիտասարդներին։

—Գալիս են Բագուից եկածները, գնանք մօտները մի խօսացնենք, ասացին մի քանիսը խմբուած երիտասարդներից և ուղղւեցան դէպի մշակները։

—Բարև ձեզ; այդ ե՞րբ էք եկել, հարցրեց Մինասը, որ ամենից համարձակն էր։

—Երէկ ենք եկել, շատ սառը պատասխանեց Սաքանը։

Գիւղացի տղաները դոցա չորս կողմը պատեցին և ապշած, բերանբաց նայում էին հագուստներին, մանաւանդ կօշիկներին ու արծաթի գօտիներին։ Նոքա էլ աւելի հպարտացած, փքուած, հնդկահաւի նման բարձրից էին նայում և ուզում էին ասել. «Ձեզ պէս գիւղացիներ չենք, մենք քաղաքից ենք գալիս, լաւ նայեցէ՛ք՝ թէ ո՛վքեր են ձեր առաջը կանգնած»։

Բոլորեքեանք էլ ուզում էին նրանց խօսացնել, բայց չը գիտէին՝ ի՞նչպէս սկսէին և ի՞նչ հարցնէին. Ճշմարիտ է, շատ ժամանակ չէ ինչ իրանցից բաժանուել Բագու մշակութեան էին գնացել և պէտք է որ ինչպէս առաջ էին եղել իրար մօտ, այնպէս էլ լինէին՝ ինչպէս մի գիւղի տղաներ. բայց դոցա վարմունքը և մանաւանդ արտաքին փոփոխութիւնը ամօթխած երիտասարդներին կապել, կաշկանդել էր։

Մշակները անձնասիրական զգացման տակ այդտեղից չէին ուզում հեռանալ, նոցա աւելի էին ուզում զարմացնել մտածելով. «Մենք շատ ենք վզներս ծռած, համետները մեջքներիս հարուստ պարոնների պլշած նայել, այժմ էլ դուք մեզ նայեցէ՛ք և երանի տուէք. մենք ձեզնից հարուստ, քաղաքավարի և խելօք մարդիկ ենք և ոչ մշակներ, ինչպէս Բագու էինք»։

—Սաքի՛, հարցրեց կրկին Մինասը, Բագու այստեղից շա՞տ է հեռու։

—Ի՞նչ ես ասում, չը լսելու դնելով։

Հարցնողը մի և նոյնը կրկնեց կարմրելով։

—Հա, հեռու է, շա՛տ հեռու է։

—Քանի՞ օրումն էք գնում այստեղից։

—Տասը, տասն և հինգ օրում։

—Բագու քանի՞ տուն է։

—Ո՛վ է իմանում, սկի կարելի բան է, որ համարուի, մի ծայրից միւսը չի երևում, ի՛նչպէս կարող ես համարել։

—Մեր գիւղի երեք չափ կը լինի՞։

—Ի՞նչ ես ասում, հազար չափ էլ չի լինի, ասում եմ ծայրը չի երևում, գիտես, որ երկու օր մի լաւ ձիով ման գաս՝ էլլի չես կարող ամէն տեղը տեսնել։

Տղաները ապշած նայում էին Սաքանին ու մտածում. «Ի՛նչ մեծ տեղ է եղել Բագուն և որքա՛ն տեսել են, երա՛նի ձեզ»։

—Հապա այդպէս մեծ տեղ կը լինի, միջի մար-

ղակի կանգնած երես առ երես։ Հարսների արտա-
յայտութիւնը պարզորոշ ասում էր. «Ի՞նչ կը լինէր
իմ ամուսինն էլ Բագու լինէր և այսպէս զարդար-
ուած գար»։ Հասած աղջկերանց ամօթխածութեան
թանձր քօղով ծածկուած արտայայտութիւնը երևան
հանեց իրանց սրտի եօթը կապով կապած գաղտ-
նիքը. «Տեսնես ղոքա եկել են պսակուելո՞ւ». իսկ մի-
ջահասակ կանանց սրտերը նախանձով լցուեց. մէկը
մտքումը ասում էր. «Ինչո՞ւ ես էլ մեծ տղայ չ՚ունե-
նամ, չ՚ուղարկեմ Բագու և այսպիսի օրը պտածակից
չը նայեմ ուրիշների տղաներին». իսկ ունեցողները ա-
սում էին. «Իմ տղաս էլ կ՚ուղարկեմ». և շտապում էր,
որ ձեռքովը գար՝ հէնց այդ րոպէին իսկոյն և եթ
կ՚ուղարկէր, որ վաղը անպատճառ մօտը լինի փող
աշխատած և լաւ հագուստում։

---

Մշակները յետ յետ նայելով անցան։ Կանայք
խումբ խումբ հաւաքուեցան և քիթ քթի տուած
խօսում էին.

—Աղջի՛, տեսնո՞ւմ ես, խօսքը բաց արաւ Նո-
ղերը, երեկուայ գիւղացի տղաներն են է՛, գնացին
Բագու, եկան մարդ դարձած. դու նրանց մի ծա-
ղիկ-ծաղիկ շորերին նայի՛ր, ասես նոր են ասղի
տակից դուրս եկած. արծաթի գօտիներին մտիկ տո՛ւր,
մի գրւանքայ արծաթից կարծես լինի շինուած.
պսպղուն կօշիկնե՛րը, պսպղուն կօշիկնե՛րը, մարդու

խելք է գնում։ Մեր կոշտ բառն էլ են փոխել, քաղաքավարի են խօսում։ Երանի՜ ձեր մոր աչքերին, էլ ի՞նչ ցաւ ու հոգս պիտի ունենան... Ա՛յ, ա՛յ այն ծիգ ծիգ տղան տեսնո՞ւմ էք՝ Մակունց Գեալուն տղայ Դանին է, որ ձեռքով մի բան չէր գալիս...

—Վի՛, աղջի՛, նա՛ է, խօսքը կտրեցին մի քանիսը, ի՞նչպէս փոխուել, ի՞նչպէս զարդարուել է։

—Հա՛, այն էի ասում, շարունակեց Շողերը, որ դորա ձեռքով մի բան չէր գալիս. հայրը ամենայն օր էլ անէծք-պղէծք չէր մնում թափում էր գլխին. դէ ե՛կ հիմա հարցրո՛ւ,—գնաց Բագու, շնորհքին, մաքուր, քաղաքավարի մարդ է դարձել։

—Աղջի՛, խօսքդ էլ կտրում եմ, վրայ բերաւ Մարիամ աքէրը, բա. գիւղումը մնալով կարծում ես մեր տղայքը մարդ պիտի դառնա՞ն. մեզնման յիմար չեն, որ սուս անեն, տղաները պահեն տաւարած, վար անող շինեն. ա՛յ նրանց հայրերն են խելօք է՛, ուղարկեցին Բագու իրանց տղաները, այժմ եկել են՝ ջիբները տրաքում, մղուկները խլթխլթում. էլ ի՞նչ ասես չեն բերել։ Երէկ գնացել էի քրոջս տունը, նրանց հարևանն է այն մէջ տեղի կապոյտ շորերով տղան...:

—Խաչունց Մկրտումէն տղայ Սաքա՞նը, հարցրին այս և այն կողմից։

—Հա՛, հիմա Սէրգի են ասում. Բագու են փոխել անունը. ով որ Սաքան է կանչում, ասում են, նեղանում է։ Հա՛, այն էի ասում, ինչե՛ր էին պատ-

մում, ի՛նչ, ի՛նչ շորեր է բերել մորը ու քուերտանց՝ համար, ի՛նչ ընծաներ բարեկամների համար. ասում են՝ նշան պիտի դնի, նշանի պատրաստութիւնն էլ է բերել. փո՛ղ՝ հօ էլ խօսք չը կայ։

—Դէ՛ էլ նորա մօր առաջ կը կարողանանք խօսել, խօսքի տուտը բաց արաւ Նարգիզը, էլ մեզ մարդի տեղ կը դնի՛. մինչև տղի գալը մեծ մեծ խօսելով էր ման գալիս քիթը ցցած, այժմ աստղերի տեղովը պիտի թռչկոտի։ Մեր մարդին ի՛նչ ասեմ, ինչ դառնայ, դարձաւ մի կողմը, ասացի՝ ա՛յ մարդ, թող մեր երեխային էլ դոցա հետ ուղարկենք. չէ՛ որ չէ, չէ, ասաց ու սուեց կանգնեց. հիմա եկած կը լինէր, մեր աչքն էլ կը տեսնէր կ'ուրախանար։

—Էլ ասում ես ի՛նչ դառնայ, վրայ բերաւ Ծո-ղերը, բաղդաւորութեան մէջ են ընկել, աղքատութեան քարը գլորեցին դէնը։ Փողը՝ փող, մարդավարութիւնը՝ մարդավարութիւն. էլ ի՛նչ ես ուզում։ Հա՛, մոռացայ ասել, Սաքանը խանութ պիտի բանայ այստեղ, ապրանք էլ է բերել։

—Դէ ա՛յ տափ, պատուի՛ մտնեմ ներս էլի, նախանձով կուրացած ասաց Հերիքնազը, բա չորս տղայ ունենամ, այսպիսի օրը ձեռքերս ծոցումս մնամ պուշկած նայելի՞ս, ախր սկի իմ Դանու եղունգը կարժեն նրա՞նք, որ նա մնայ տանը, տաւար պահի, վար անի ձեռքը կոշտացած, նրանք գնան մարդ դառնան, մեր տղերանց հետ էլ չ'ուզենան թէ խօսեն։

—Էլ մի՛ ասի, Աստուած մեր խելքը առել է,

ախր մի խելքը ամառ ձմեռ ի՛նչ անի. է՛ աշխարհս տրաքւած էլ Ուզունից, Շաղաթից, Փռնակոթից չես տեսում հէնց է որ գնում են հա գնում դարտակ ջիբով, դառնում լիքը ջիբով. գնում են գիւղացի, դառնում են քաղաքացի. մենք միայն հէնց գիւղացի՛, գիւղացի՛ պիտի մնանք հա մնանք։

Աղջիկերքը ոչինչ չէին խօսում, միայն նորահարսերի կողքը կպած ամենայն ուշադրութեամբ լսում էին նրանց ասածն ու խօսածը։ Նրանք էլ ոգեւորւած էին Բագու քաղաքով, նրանց մտքովն էլ շատ բաներ էր անցնում. մէկը մտածում էր. «Եղբայրս գնացած լինէր, բերած կը լինէր ինձ համար լաւ լաւ բօղչամիջի շորեր»։ Միւսը. «Երանի՛ ես էլ եղբայր ունենայի»։

Կանանց մեծամասնութիւնը, որոնք տղաներ ունէին, ուրախ էին. մտածում էին. «Կ՚ուղարկենք, մենք էլ երջանիկ կը լինինք ինչպէս նրանք». իսկ նրանք որոնք այդ բաղդաւորութիւնից զրկւած էին, ոչինչ չէին կարողանում խօսել, մի բան կորցրածի պէս դէս-դէն էին տատանւում։

Մշակները հեռացան կանանց աչքերից. նոքա միւս փողոցում տեսնելով խմբւած երիտասարդներին՝ դէպի այդ կողմը ծռւեցան, նոցա էլ զարմացնելու։

—Սրանց՝ մուժիկներին նայէ՛ք, ասաց Սաքանը, ասես տաւար լինին, տանես Բագու կը խրատեն՝ ծովը կը թափւեն հա՛. մի օր չեն կարող մնալ։

—Տօ՛, ակի փողոցներով կա՛րող են գնալ, Փայտոնների տակ կը մնան, պատասխանեց Դանին։

Այսպէս խօսելով, ընչացքները ոլորելով և արհամարհական հայեացքով մօտեցան խմբուած երիտասարդներին։

—Գալիս են Բագուից եկածները, գնանք մօտները մի խօսացնենք, ասացին մի քանիսը խմբուած երիտասարդներից և ուղղուեցան դէպի մշակները։

—Բարև ձեզ; այդ ե՞րբ էք եկել, հարցրեց Մինասը, որ ամենից համարձակն էր։

—Երէկ ենք եկել, շատ սառը պատասխանեց Սաքանը։

Գիւղացի տղաները դոցա չորս կողմը պատեցին և ապշած, բերանբաց նայում էին հագուստներին, մանաւանդ կօշիկներին ու արծաթի գօտիներին։ Նոքա էլ աւելի հպարտացած, փքուած, հնդկահաւի նման բարձրից էին նայում և ուզում էին ասել. «Ձեզ պէս գիւղացիներ չենք, մենք քաղաքից ենք գալիս, լաւ նայեցէ՛ք՝ թէ ո՛վքեր են ձեր առաջը կանգնած»։

Բոլորեքեանք էլ ուզում էին նրանց խօսացնել, բայց չը գիտէին՝ ի՞նչպէս սկսէին և ի՞նչ հարցնէին. ճշմարիտ է, շատ ժամանակ չէ ինչ իրանցից բաժանուել Բագու մշակութեան էին գնացել և պէտք է որ ինչպէս առաջ էին եղել իրար մօտ, այնպէս էլ լինէին՝ ինչպէս մի գիւղի տղաներ. բայց դոցա վարմունքը և մանաւանդ արտաքին փոփոխութիւնը ամօթխած երիտասարդներին կապել, կաշկանդել էր։

Մշակները անձնասիրական զգացման տակ այդտեղից չէին ուզում հեռանալ, նոցա աւելի էին ուզում զարմացնել մտածելով. «Մենք շատ ենք վզներս ծռած, համետները մէջքներիս հարուստ պարոններին պլշած նայել, այժմ էլ դուք մեզ նայեցէ՛ք և երանի տուէք. մենք ձեզնից հարուստ, քաղաքավարի և խելօք մարդիկ ենք և ոչ մշակներ, ինչպէս Բագու էինք»։

—Սաքի՛, հարցրեց կրկին Մինասը, Բագու այստեղից շա՞տ է հեռու։

—Ի՞նչ ես ասում, չը լսելու դնելով։

Հարցնողը մի և նոյնը կրկնեց կարմրելով։

—Հա, հեռու է, շա՛տ հեռու է։

—Քանի՞ օրումն էք գնում այստեղից։

—Տասը, տասն և հինգ օրում։

—Բագու քանի՞ տուն է։

—Ո՛վ է իմանում, ակի կարելի բան է, որ համարուի, մի ծայրից միւսը չի երևում, ի՞նչպէս կարող ես համարել։

—Մեր գիւղի երեք չափ կը լինի՞։

—Ի՞նչ ես ասում, հազար չափ էլ չի լինի, ասում եմ ծայրը չի երևում, գիտես, որ երկու օր մի լաւ ձիով մանգաս՝ էլի չես կարող ամէն տեղը տեսնել։

Տղաներըապշած նայում էին Սաքանին ու մտածում. «Ի՞նչ մեծ տեղ է եղել Բագուն և որքա տեսել են, երա՛նի ձեզ»։

—Հապա այդպէս մեծ տեղ կը լինի, միջի մար-

դիկ բոլորն էլ հայե՞ր են, հարցրեց մի ուրիշը սիրտ առած։

—Չէ՛, ամեն ազգից էլ կայ. էլ ռուս ու նեմեց չես ասում, ֆրանկ ու ինգլիզ չես ասում՝ ամենը այնտեղ են։

—Ա՛, Սաքա՛ն, դարձաւ Ստեփանը, նեղանում ես խօսալուց, դրանց մօտ էլ պատմի՛ր այն բաները, որ ինձ մօտ պատմեցիր, է՛հ, որ լսէք կը մնաք ձեռքոտներդ տափից կտրած։—Միւսներն էլ նոյնը խնդրեցին։ Դանին տեսաւ որ Սաքանը համով չի նկարագրում իրանց տեսած հրաշալիքներով լիքը Բագուն, ինքը սկսեց.

—Բագու, մի խօսքով ասում էք՝ պրծաւ գնաց. Բագուն՝ գիտէք՝ մեծ, շատ մեծ տեղ է, ծովի մօտն է. ծո՛վ, է՛, որ նայում ես ոչ ջունդ ունի ոչ պուճախ, երկնքի հետ խառնուած է. վրան ինչե՛ր կայ, ինչե՛ր.—մեծ մեծ տներ շինած, ջրի երեսը գցած. ի՞նչ են անում այդ մեծ մեծ տները.—Ջրի երեսին լողում, ուր ուզում, գնում են. մէկ էլ տեսար շուխն փչեց, ճանապարհ ընկաւ. ի՛նչպէս է գնում, Տէ՛ր Աստուած, է՛, փը՛ռռ հա փը՛ռռ, վզզալի, ջուրը ճղելով, հրացանի գնդակը ի՛նչ կարող է նորա յետեւից հասնել, թռչում է ջրի երեսին, աչքդ էլ յետեւիցն գնում, մէկ էլ տեսար կորաւ, էլ չի երեւում. աչքդ էլ չի ջոկում, մի ճանճի պէս է երեւում։ Բա չէք ասում թէ ի՞նչպէս է գնում, որ ոչ ձի կայ լծած և ոչ էլ պարանով քաշում են։

—Ի՞նչպէս է գնում, հետաքրքրւած հարցրին այս ու այն կողմից։

—Ի՛նչպէս է գնում, կրկնեց նոցա հարցը ծիծաղելով, գնում է, շատ արագ է գնում, ֆրանկներն ու ինգլիզներն են հնարել, ջրի երեսը գցել. մէկ էլ տեսնում ես՝ մէկը դուրս եկաւ այդ տան բարձր տեղը կանգնեց և այդտեղից հրամաններ տւաւ. դորա ձեռքումն է գտնւում նորա թլիմը, որ կողմը բանալին շրջում է, այնպէս էլ պրախօդը հնազանդ գնում է։

—Բա տակ չի անո՞ւմ, ջրի վերայ ի՛նչպէս է մնում, հարցրեց Մինասը։

Ծիծաղեց Դանին, ընկերներին նայելով ուզում էր ասել. «Այդ տեսակ յիմար հարցեր միայն երեխաները կը տան»։

—Չէ՛, տակ չի անում, թէև շատ և շատ մեծ է, մեր եկեղեցին չը կայ, նորա տասը, տասն և հինգ չափ կը լինի. վրան գերաններ կան, որ նայում ես ցածից վեր՝ գլխարկդ ընկնում է, բոլորը ինչ որ կայ նորա ծայրումն է, նա չի թողնում որ այդ աժդահայ պրախօդը ջրի տակը գնայ։ Այս ծովը. պրախօդները մէկը չէ, տասը չէ, հազար, երկու հազար, ինչ եմ ասում՝ ովկի կարելի՛ է համարել, ծովի երեսը լիքն է լինում։

—Բագուայ տներից աւելի՞ է, որ կանգնում ես մի փողոցում, նայում՝ խելքդ գնում է. մեր տներն նման ձախ ու ծուռ. չեն, մի յարկանի չեն, շարքին,

երկու, երեք յարկանի, ապակիներով ծածկած առաջները, որ մտնում ես մէջը, ափսոսում ես ոտք դնես, կոխ տաս, վռվռում է հայելու նման։

—Հապա խանութները չես ասո՞ւմ, խօսքը խլեց Ստեփանը, մեծ մեծ խանութներ՝ դռները. ողջ ապակուց...

—Հա՛, խօսքը կտրելով շարունակեց Դանին, մեծ մեծ են խանութները, դռները ողջ ապակուց, մէջները ով է իմանում ինչե՛ր են ծախում, աշխարհքիս ամեն ծայրիցն էլ բան են բերում այնտեղ. այն նաւերը չը կա՞ն, որ ասացի, նրանցով են բերում...

—Մէկը չի ծախում մի խանութում, կրկին խօսքը խլեց Ստեփանը, որը թէև Բագու չէր եղել օրումը, բայց այնքան մօտը պատմել էին, որ անգիր էր արել ամբողջ կտորներ, տասը, տասն և հինգ, քսան հոգի են ոտի վերայ կանգնած՝ առնողները այնքան շատ են, մէկը արշինով չափում է, միւսը կտրում է, մի ուրիշը ծալում է, չորրորդը թղթի մէջ է ամրացնում, տալիս գնողին, հինգերորդը փողն է առնում...

—Հա՛, հինգերորդը փողն է առնում, շարունակեց Դանին։ Ի՛նչ փող, սելլի պէս է գալիս, թիով են դիզում, սկի կարողա՞նում են օրւայ աշխատածը համարել. տօ՛, հարստութիւն, հարստութիւն այնտե՛ղ է. դո՞ւք էլ էք ապրում, մե՞նք էլ. կեանքը ուրախ, քաղաքը լաւ, լուսաւոր, փողը շատ, է՛, էլ

ի՛նչ ասեմ, մարդ պիտի իւր աչքով տեսնէ, որ իմանայ, թէ չէ պատմելով ի՛նչ կը լինի, մէկը ասում ես, միւսը մոռանում։

—Տե՛ղ, տե՛ղ այն է և ոչ թէ մեր գիւղը, առանձին խօսում էին երեք հոգի, մենք էլ ենք ապրում, նրանք էլ. երևի այնտեղ չի կարելի մեր հագուստով մնալ, նորա համար են սրանք փոխել։

—Բա ի՞նչպէս կարելի է, պատասխանեց միւսը, մի օր չեն թողնի որ մնանք, դուրս կ՚անեն։

Մշակները թէ մի օր իրանց կեանքում երջանիկ օր պիտի տեսնէին՝ այդ օրն էր. նոքա էլ չէին յիշում իրանց այնքան տարւայ չարքաշ կեանքը. նրանց մէջքին համետ չը կար, բեռնաւորւած ծանր հակով, ոտերում՝ տրեխ, մատերը դուրս դառած, կրունկները վեր ընկած. մարմինները ցնցոտիներ չէին ծածկում, հազար տեղից կպկպորած. փորները քաղցից չէին ղրղրում, մէջքներին կպած, այլ լաւ հագւած, կուշտ կերած, քանի տարի է մածունի, հաւի մսի, կաթով ճաշի համ չէին տեսել, բերանների ջուրը գնալով կերել էին, թէև իրանց տներում ասել էին. «Այս ի՛նչ կերակուր է, կերակո՛ւր, կերակո՛ւր Բագու են պատրաստում»։ Այսպէս օրւայ հերոսներ դարձած, ամենքն էլ նրանց մասին էին խօսում, նրանց էին մատով ցոյց տալիս և իրանց համար իրարից ծածուկ փեսացու ընտրում։ Ցնծում էր նոցա սիրտը, ուրախ էր նոցա դէմքը, չէին ուզում որ մթնի, նոցա սրտի փափագն էր՝ ման գալ, ուրիշներին իրանց ցոյց տալ, զարմացնել։

---

Մշակները հեռացան. փողոցի միւս ծայրում պատահեցան խաղացող երեխաներին. փոքրները յետ փախան՝ կարծելով հայեր չեն, իսկ մի քիչ մեծերը կտուրների վերայ բարձրացան և սկսեցին «զդրաստի, զդրաստի» անել, ինչպէս սովոր են քաղաքացուն ռուսերէն բարևել, կարծելով ռուս են։ Մշակները հեռացան ուշք չը դարձնելով, իսկ երեխաները մի և նոյնն էին կրկնում և աւելացնում՝ «դուրակ սաբակ, դուրակ սաբակ, չիտրի պիտրի, չիտրի պիտրի», իրանք էլ չը հասկանալով թէ ինչ են ասում։

---

Մշակները իբր թէ չ՚իմանալով՝ ծռւեցան դէպի մարդկանց խումբը։

—Բարո՛վ էք եկել, գալուստներդ բարի, ձայն տւաւ Խաչի ապէրը, որ գիւղում մեծ յարգ ու պատիւ ունէր. եկէ՛ք նստէք, տեսնենք ի՞նչ կայ, ինչ չը կայ։—Նրանք մօտեցան և բոլորին էլ բարևեցին։

—Ի՞նչպէս էք, հարցրեց Խաչի ապէրը, լա՞ւ աշխատեցիք այս քանի տարում։

—Ինչու չէ, փա՛ռք Աստուծոյ, պատասխանեց Սաքանը, Բագու գնացողը չ՚աշխատի՛, հէնց դարտակ տեղիցն էլ որ ման գաս փողը հող է։

Այս պատասխանի վերայ գիւղացիները, կարծես, քնած տեղերից ցնցւած զարթեցան, աչքները չորս արած, ձեռները դէպի փողի կուտակները մեկնեցին՝ հաւաքելու այդ կենսատու արծաթը։ Ամեն մէկը մտա-

ծում էր. «Կը գնամ անպատճառ, կ'ուղարկեմ անպատճառ տղիս, եղբորս». բայց ի՛նչպէս ափսոսում էին և իսկոյն տխրում, որ առաջ չեն ուղարկել, առաջ չեն գնացել։

—Ի՞նչպէս է, լա՞ւ տեղ է Բագուն։

—Շա՛տ, շատ լաւ։

—Նաւթը, ասում են, ջրի պէս է այնտեղ. ճշմարի՞տ է։

—Ի՛նչ նաւթ, է՛, այնքան հորեր կան քանդած, որ տափի երեսին սաղ տեղ չը կայ. նաւթը ցածից խփում է վեր՝ շատ վեր և այնտեղից թափւում է լճակները, ծով դառնում. փութը ինչո՞վ են ծախում.—մի կոպէկ, շատ շատ որ թանկանայ՝ կէս կոպէկ, ջրից էլ էժան։

—Փութը մի քառորդ կոպէկ, ամենքն էլ կըրկնում էին և զարմանալով միմեանց նայում։

—Տեսէք ո՛րքան շատ է, որ այդպէս էժան է, ասաց Ստեփանը նայելով իւր համագիւղացիներին։

—Շա՛տ, ի՛նչ շատ, եթէ բոլոր հորերը բաց թողնելու լինեն, աշխարհքիս ամենամեծ գետիցն էլ մեծ կը լինի։

—Հարուստ մարդիկ շա՞տ կան, հարցրեց Խաչի ապէրը։

—Հէնց բոլորեքեանքն էլ հարուստ չե՛ն, պատասխանեց Դանիին, աղքատի տեղ չէ. լաւ հաշւով ապրողի փողին փող չի հասնի, փող շատ ես աշխատում, բայց ինչ կ'անես, շատ էլ մսխում ես.

այստեղի նման չէ, որ մի օր ցամաք հացով մարդ կառավարուի, մի օր մածնով, մի օր հաւկիթով. չէ՛, չի լինում, անպատճառ պիտի կերակուր ուտես և ի՛նչ տեսակ կերակուր, մարդու մատներն էլ հետն են գնում ուտելիս։

Գիւղացիները դարձեալ միմեանց զարմացական հայեացքով էին նայում և նոցա ասածները հալած իւղի տեղ ընդունելով՝ իրար հետ վիճում էին հեռու կանգնածները. մէկն ասում է.—«Ինչո՞ւ կ՚ուտեմ, ինչպէս այստեղ եմ ապրում, այնտեղ էլ այսպէս կ՚ապրեմ»։

—Չէ՛, Սանթի՛, պատասխանում է հարևանը, չես տեսնում Դանին ի՛նչ է ասում,—ասում է չի լինում։

—Տօ՛ նա երիտասարդ է, այդպէս կը լինի, նրանք իրանց բերանից չեն կարող կտրել, ինչպէս մենք կարող ենք անել։

Սոքա իրանց խօսակցութիւնը կտրեցին, երբ Խաչի ապէրը կրկին հարց տուաւ. այս անգամ իրանց մասին էր թէ ինչո՞վ են պարապել Բագու։ Նոքա չը յայտնեցին որ մշակ են եղել. այդ բանը շատ կը ստորացնէր իրանց դիրքը համագիւղացիների աչքում, ուստի Սաքանը, որ սուտ ասելում շատ վարժ էր՝ ասաց.

—Գործարաններումն ենք եղել, մշակների վերակացու։—Այդ լսելով մնացած մշակները՝ թէև առան թէ թուչեն, կարծես իրանք էլ կասկածեցին, որ մշակ չեն եղել։

—Ամսական ո՞րքան էիք ստանում։

—Ո՛վ է իմանում. այնպիսի ամիս էր լինում 35 մանէթ, այնպիսի՝ 30, 25, մի խօսքով 25-ից պակաս չէ եղել. գործը լաւ կատարելուցն է. մէկ էլ տեսնում ես գործարանատէրը եկաւ, տեսաւ ամէն բան կարգին, սարքին՝ հանեց ծոցից մի կամիր, խշխշան տասանոց տւաւ, շնորհակալութիւն արաւ, դուրս գնաց. փող է, ստանում ես, դնում գրպանդ, էլ ո՛վ ժամանակ ունի նստի համարի, տեսնի ամիսը որքան է ստանում։

Սորան էին սպասում գիւղացիները. «35 մանէթ դեռ աւելորդ պարգև էլ, որ շատ անգամ կարող է 40-ին էլ հասած լինի», ասում էին միմեանց, ձեռքերը իրար քսում և բացականչում. «Ա՛յ, ա՛յ, ա՛յ, տես մենք իմացե՞լ ենք, մենք մեր գիւղում քնածի պէս ենք, աշխարհս տանող տանողի վերայ է, աշխատող՝ աշխատողի, իսկ մենք մաճից ձեռք չենք քաշում, մեր տաւարի գոմից չենք զզւում»։

Խորամանկները ոչինչ չէին ասում, նոքա ծրագիրներ էին կազմում սուս ու փուս և զարմանում մշակների պարզամտութեան վերայ, որ այդպէս ճշտութեամբ ասում էին իրանց ստացած փողի քանակութիւնը, մոքներումն անգամ չ'անցնելով, որ նոքա անձնասիրական զգացման տակ մոռացել էին այդ պարզ հաշիւը։

Այնուհետև գիւղացիները շատ երկար հարց ու փորձ արին Բագուայ մասին. մշակները աշխատում

էին, որքան կարելի է, չափազանցօրէն նկարագրել իրանց տեսած քաղաքը և գերբնական երևցնել նոցա աչքերին։

Արևը մայր մտաւ։ Հնչեցին եկեղեցու զանգերը. գիւղացիները խաչ հանեցին երեսներին, «օրհնեա՛լ է Աստուած յամենայն ժամ» ասելով ոմանք գնացին իրանց տները, իսկ ոմանք եկեղեցի։

## Բ.

Մութը գետինն էր առել, խէր ու շառը բաժանուել, ոտը խաղաղուել, կտրուել. ամէն մարդ շտապում էր տուն իւր սրտինը, իւր բարի ցանկութիւնը իւր օջաղի մօտ, կոճերի տակ ասել, խօսել ուրախ ուրախ։ Որքա՛ն քաղցր, սիրելի էր այդ րոպէին չափահաս որդին Ծնողի համար, ամուսինը՝ կողակցի, եղբայրը՝ քրոջ, որովհետև առաջներին օտարութիւն՝ հեռու երկիր կար գնալու։

Արդէն ամէն մէկը հաստատ որոշել էր Բաքու գնալու խնդիրը։ Ստեփանը, որ մենք տեսանք նորեկ մշակների հետ, բոլորովին անձնատուր էր եղած այդ հարցին. նա վառուել, ոգևորուել էր և հաստատ վճռել էր այլ ևս չը մնալ գիւղումը. գիւղի օդը, գիւղի նիստ ու կացը նրան անտանելի էր թւում. նա շտապում էր որքան կարելի է շուտով տրեխների փոշին թափ տալ և պանդխտի ցուպը ձեռքը առնելով՝ հեռանալ գիւղից։

Ստեփանը մշակների հետ զրոյց անելով ճա-

նապարհ էր գցել նրանց, այժմ յետ էր դառնում
տուն. նա թռչկոտում, ցատկոտում էր գիւղի ծուռ
ու մուռ ճանապարհներով՝ անդադար քարերով
ընկնելով. նա մոռացել էր ամէն ինչ. նորա մտածողու-
թիւնը միայն կենդրոնացել էր Բագուայ վերայ. ոչ մի
բան չէր տեսնում, ոչ մի բան չէր կարողանում մտա-
ծել, միայն աշխատում էր շուտով տուն ընկնել, աչ-
քալոյս տալ, որ այնուհետև աղքատութեան քարը
գլորած է համարում իրանց ընտանիքի համար.
որչա՛փ քաղցր էր տեսնել իւր ընտանիքը ազատ այդ
աղքատութեան ծանր քարի ճնշումից, բոլորովին
ազա՛տ... Կարո՞ղ էր չը թռչկոտալ Ստեփանը, կտուր-
ների վրայով չը ցատկոտել. մի՞թէ նա միայն դրանով էր
բաւական.—ոչ, այդ շատ քիչ բան համարեց, երբ
մշակների բոլոր ասածները մտաբերեց. «Աղքատու-
թեան քարը գլորելը կայ ու կայ, մտածեց նա, դու-
ուրիշ բան սա՛... չէ մին սրանից յետո՛յ էլ պիտի
վիզներս փոկ անենք, փողի առաջ դողդողանք. էլ
պրծաւ, հէ՛նց ապրեմ, հէ՛նց տունս պահեմ, որ
սաղ աշխարհքը զարմանայ. Սաքուն, Դանուն նման
կ՚ապրե՞մ, նրանք չեն իմանում. ե՛ս, ե՛ս կը տեսնեն
ինչե՛ր կ՚անեմ մի երկու տարուց յետոյ...»

Ստեփանը հասաւ տուն. կնիկը, որդիքը շատ ու-
րախացան իրանց տէր-տիրականին սովորականից դուրս
ուրախերես տեսնելով. որդիքը—երկու աղջիկները՝
Ջառին ու Մանուշակը, որոնցից առաջինը վեց տա-
րեկան էր, իսկ երկրորդը՝ չորս, հեռուից հեռու

չէին։ Մամ տալիս իրանց հօր շուրջը, մօտեցան, մինչև անգամ ուզեցին նորա գոգում նստել. իսկ փոքրիկ տղան, որ նոր-նոր սկսել էր չորեքթաթ տալ, աչ-քերը գցած հօր մեծ մեծ, ուրախութեամբ լիքը աչքերին, մի կերպ փորսող տալով մօտեցաւ՝ ոտերին, ձեռներին անելով, փափլիկ թաթիկը դրաւ կուշտ ծնկան, սպասելով որ ուրախ հայրը վերցնի, ձեռ-քերի վերայ առնի։ Թագուհին—Ստեփանի կողակիցը, աչքի անկիւնով նայելով մարդու լայն, սպիտակ, պարզ ճակատին, չափից դուրս ուրախ ու զւարթ դէմքին և սրած ընչացքին՝ ժպտաց, մի քնքշական զգաց-մունքով համակւեցաւ, իւր աչքերն էլ փայլատա-կեցին, իւր յօնքերն էլ յետ գնացին. որքա՛ն ուրախ կը լինէր միշտ այդպէս տեսնէր, միշտ այդպէս զգար...

—Խէ՛ր լինի, տեսնես ի՛նչ կայ, որ ուրախ է, մտա-ծում էր ուրախ ուրախ Թագուհին. հիմա լաւ ժա-մանակն է՝ ասեմ, որ մի քանի պակասորդ ունիմ առնի. վա՛յ թէ էլի բարկացաւ... չէ՛, ասեմ, նա ուրախ է, չի բարկանայ. այսօր էն ի՛նչ էր իմ դրու-թիւնը մեր հարևանների մօտ,—քօշերիս կապը կտրած, գլխիս լաչակը ծրորած, արխալուղս ափռիւմ ափռիւմ դառած. չէ՛, պիտի ասեմ ինչ էլ որ լինի։

—Ա՛յ տղայ, դարձաւ ամուսնուն, բա ե՞րբ ես առնելու քօշերս, լաչակս... և հագիւ հազ կարողա-ցաւ այդ բոլորը ասել։

—Դու մեծ բաներ ուզի, դրանք ինչե՛ր են, դու դեռ մի քիչ համբերի, յետոյ կը տեսնես ինչ

կը լինի, տես քեզ խաս ու ղումաշում չեմ պահում,— էլ սաղրի քօշերս որն է, զառ չարղաթս, աբրիշում, զարբաբ արխալուղս, բոլորը բոլորը աւել աւել կը լինի, սկի մի բանի նեղութիւն չես քաշիլ։

Թագուհին սկզբում կարծեց մարդը իրան ձեռն է առել, ծաղր է անում, բայց յետոյ տեսնելով որ անկեղծ խօսքեր են, որ դուրս են գալիս յորդառատ կերպով Ստեփանի բերանից, ոտը աւելի առաջ դրաւ։

—Էլ ե՞րբ, ասաց աւելի համարձակ, քանի՛ մէկ սպասեմ, թողնեմ, որ բանը բանից անցնի, միա երևալ, յետոյ առնես. երևի քաղաքը ցորեն ես տանելու ծախելու, կ՚առնես չէ՞։

—Աղջի՛, ի՞նչ քաղաք, ի՞նչ ցորեն, գիժ է, գլխին ձի է քացի տուել, ես ինչ եմ ասում, սա ինչ. բա ականջներդ բամբակով լքցրել ես, այսքան հարայ ենք տալիս հարայ՝ դեռ դու նոր ես Վարդան վա՛յ անում. հա՛, հա՛, հա՛, լաւ կնիկ ես, լաւ իմ աշխատածը կը պահես այդ անխելք գլխո՛վդ... Բազու եմ գնալու, Բազո՛ւ, դու հիմիկւանից պատրաստութիւնը տես, ճղած, ճոթռածը կարի՛ր, կարկատի՛ր, որ մի բանի էլ ասես պակասութիւն չը քաշեմ. դու տես այնտեղից ինչե՛ր եմ բերելու է՛. դու տունը լաւ պահի՛ր, երկու տարի չի անցնիլ և մենք կ՚ապրենք այնպէս ինչպէս մի քաղաքացի, էլ չես ասի՞ ա՛յս բեր, ա՛յն բեր, այն ժամանակը առանց բերանիդ նեղութիւն տալու իւր ոտովը կը գայ առաջդ կը կանգնի. լա՞ւ է, բաւակա՞ն ես ինձնից, սրանից էլ աւել ի՞նչ

ես ուզում․ բայց պէտք է մի քիչ հուփ տուած ապրել, շատ կը տեսնես, շատ էլ շաղ կը տաս։

—Բագո՞ւ․ ա՛յ մարդ, էդ ի՞նչ ես ասում, բա ասա մենք էլ մարդամէջի կ՚երևանք էլի․ խալխի կնանիքը այսօր քիթները աստղերի տեղերումն էին մանածում, չէին էլ ուզում մեզ հետ խօսել, ինչ է մինի տղան, միւսի մարդը Բագու է․ լա՛ւ, հիմա էլ թող չը խօսեն, ա՛յ ես նրանց գլուխը թաղեմ, ցա՛ւս քաղեն նրանք էլ, նրանց մարդիկն էլ, հէնց են իմանում թէ մենակ իրանք են աշխարհում, մին կենամ, մին հագնեմ, որ բերանները մնայ բաց․ խէ դու ո՞ւմնից ես պակաս,—Դանո՞ւց, Սաքո՞ւց, որ սաղ Բագուն հաւաքել են, վեր առել եկել։

—Աղջի՛, մարդի անուն տո՛ւր, ինչ ես խօսում․ թող քո այդ քիթները ցից կնանիք սպասեն մի երկու տարի էլ, այն ժամանակն թող քիթները տանեն աստղերին կպցնեն․ ը՛հ, էլի խելքները պակաս կնանիք են է՛, հէնց են իմանում թէ մենակ իրանց տղաներն են աշխարհումն, բա մենք ոչինչ, լա՛ւ։

Թագուհին էլ ամուսնու նման վառւեցաւ․ սիրունատեսիլ կերպարանքը մի րոպէում փոխւեցաւ—զւարթացաւ․ սև-սև, խոշոր աչքերը ծիծաղկոտ կոպերի մէջ փայլեցան, ձեռք ու ոտքը ուրախութիւնից դող ընկաւ, շտապում էր ամէն ինչ, ինչ որ ամուսնու բերանից դուրս էր գալիս, մի ակնթարթում կատարել, վերջացնել․ բայց ուրախութիւնից մի տեղ հանգիստ չէր նստում, կամ սնդուկն էր բանում,

շորերը հանում կամ մի ուրիշ տեղից կապոց էր բերում, շորերը միմեանցով տալիս։ Այսպէս անվերջ մինչև լոյսը կը խառնէր, միմեանցով կը տար եղած չեղածը, եթէ Ստեփանը չընկատէր նրան, որ հանդարտութեամբ մի տեղ նստի, իւր բանին կենայ։

Երջանիկ էր Ստեփանը. առաջի անգամն էր, որ նա այնպէս ջերմ սիրով ողջային կրծքին սեղմեց, համբուրեց, առաջի անգամն էր, որ այնպէս քաղցր քաղցր, առանց բարկանալու, հայհոյելու իւր կողակցի հետ մի երեկոյ անցկացրեց։ Նորա ոգևորութիւնը դեռ չէր նստել, ներսը, կարծես, քանի գնում այնքան աւելի էր եռում, եփում. Նստած տեղը քրտնել էր, կարծես, վազելուց էր տուն ընկել. գտակը դրած գետնին, ձեռքը կողքին՝ երևակայում էր իրան Բագու։ Բագուն նորա աչքին պատկերացաւ մի այնպիսի քաղաք, որ «ոչ ճռունդ ունի ոչ պռճախ». այժմ ինքը ընկած է այդ քաղաքը, փողը ջրի պէս է, հաւաքում է հա հաւաքում, չի կշտանում, չի ուզում շուտով տուն դառնալ, ուզում է աւելի փող աշխատել, բոլորովին ապահովուել և ապա թէ առօքփառօք յետ դառնալ։ Յետ դարձաւ. գրպանները ոլրաքում է, ապրում է ինչպէս մի բէգ. նա թիք տուաւ՝ իրան բէգի դիրք տալով։

Բագուհին բանի տակ նստած՝ ասեղը ձեռքին կարկատան էր անում, մի և նոյն ժամանակ վառուած երևակայութեամբ Բագուայ մասին մտածում.— ամուսինը յետ է դարձել հագուստը փոխած, բերել է

շատ փող և հագուստներ, աղջիկները քաղաքացու հագուստում են, իսկ ինքը արծաթի զօտի ունի ածած։ Անցաւ մի երկու ամիս, ձիաները կանգնեցին բակումը, պատրաստում են գիւղը թողնելու. քաղաքում են և ի՛նչպիսի տներում են ապրում, ի՛նչպէս են հագնւած, ո՛րքան երջանիկ և ուրախ են.... Թագուհին այնքան էր յափշտակւել, որ փոխանակ ծրորած տեղերը կարկատելու, սաղ տեղերին էր գցում կարկատանը և կրկին քանդում։

Երեխաները քնած են. ձայն-ձուն չը կայ։ Ստեփանի ականջը ձայնի էր, նրան շատ վատ էր թւում, որ աքաղաղները շուտով չէին յայտնում իրանց ձայնով բարի լոյսը. նորա համար ժամանակը կանգնած էր, առաջ չէր գնում, կարծես, մութը անվերջ պիտի տևէր, իսկ քունը, հէնց գիտենաս, նորա աչքերը չը գիտէին. երևակայութիւնը հեռուները չէր գնում, բարձր թռիչքները փողի կոյտերն էին, որ ուրախ ուրախ աչքերը մեծ բացած հաւաքում հա հաւաքում էր։ Ստեփանը չէր դադարում այդ մի և նոյնը զանազան ձևերով երևակայել։

Թագուհին դադրեց կարկատաններից, կարի վերայ ննջեց՝ քաղցր երազներ տեսնելով ապագայի համար։ Ստեփանն էլ ոսկու կոյտերի վերայ ննջեց և այդ ոսկու կոյտերը քնած տեղն էլ հանգիստ չը տւին։

---

## Գ.

Սուրբի լուսին քաղցր հնչում էին եկեղեցու զանգերը և ժամասէրներին հրաւիրում Աստուծոյ տունը։ Ոտի վերայ էին գիւղացիները. ծերերը կուչ ու ձիգ անելով եկեղեցի էին գնում, հարս ու աղջիկ անլուայ կուժերը ուսերին իրանց աղբիւրն էին շտապում։ Աղբիւրը կենդանացաւ լուսաբացի հետ, սպիտակ ու կարմիր լաչակներ էր, որ փռփռում էին նորա վերայ. Նոքա ախորժակով չոմփ-չոմփ երեսներով ուխին պաղ ու վճիտ ջուրը, զւարթացան և թշերի վերայ թարմ վարդեր բացուեցան. Լցրին իրանց սիրելի կուժերը աղբիւրի ակից և ուսերին դրած կաքաւի պէս շորորալով ու ցատկտալով տուն եկան, կժերը վայր դրին, աւելը ձեռներն առան, տուն ու դուռը սկսեցին աւլել, սրբոտել։

Ստեփանի կինը վաղ զարթել, անթեղած կրակը խրար էր դրել, ջուրը բերել, սրբոտել. իսկ Ստեփանը գիշերուայ մեծ մասը անքուն անցնելով, անդադար Բազուայ մասին մտածելով, այն մի մասն էլ քաղցր քաղցր երազներ տեսնելով՝ դարձեալ Բազուայ մասին՝ վեր էր կացել առաւօտ-առաւօտ Մկրտումենց տուն գնացել Սաքանին Բազուայ մասին հարց ու փորձ անելու։

Ժամը վերջացաւ. Ժամաւորները դուրս եկան, «ողորմի Աստուած» ասելով քթախոտ համեցէք արին իրար և ոտերը կախ տուին։ Տէր-Մարկոսն էլ դուրս

եկաւ և խօսակցութիւնը աւելի կենդանացաւ։ Ծերերի մէջն էր և Մկրտում ապէրը՝ Սաքանի Հայրը. նա կուչ եկած, աչքերը կուլ գնացած, երեսը խորշոմներով ու կնճիռներով ծածկուած, ճերմակ կոշտ միրուքը խճճուած՝ երեսին կպած, ծնօտն ու ընչացքը քթախոտից դեղնած մի ծերունի էր։ Նորա սովորականից դուրս արտայայտութիւնը ու ուրախ աչքերը անխօս ասում էին. «Տղաս եկել է, էլ առաջուայ Մկրտումը չեմ, որ պտածակից նայեմ. քթախոտս էլ կաշուի մէջ չեմ պահում, տղաս Բագուից տուփ է բերել»։ Մկրտում ապէրը ցանկանում էր անպատճառ տուփը հանել, թէև կարիք չէր զգում քթախոտի. ուստի փոքրիկ, ջրջրոտ աչքերի անկիւնով դէս դէն նայեց, դողալով տուփը հանեց, մի քանի անգամ վախվխելով կողքերին խփեց և որովհետև դեռ չը գիտէր տուփ բանացնելը՝ երեսը փոխանակ դէպի վեր պահելու ցած պահեց, բացուեցաւ և քթախոտից բաւականին թափուեցաւ. Նա առաւ մի քաշ՝ մտքումը ինքն իրանից նեղանալով թէ ինչո՛ւ այդ պահին հանեց, որ չար աչք կպչի և այդ օրին հանի իւր սիրելի տուփը։

—Շնորհաւո՛ր լինի, շնորհաւո՛ր, Մկրտո՛ւմ, ի՛նչ լաւ տուփ է, տղադ է բերել հա՞, այս ու այն կողմից ձայն տալով մի-մի քաշ վերցրին և խեղճի քթախոտը վերջացրին։

—Մկրտում եղբա՛յր, ե՞րբ ենք աչքալուսանք գալու, ասաց տէր-Հայրը։

—Ձերն է տունը, ի՛նչ էք հարցնում, համեցէ՛ք գնանք,—ասաց և առաջ ընկաւ տըմբտըմբալով։ Հինգ, վեց ծերունի և տէրտէրը հետևեցին Մկրտում ապօրը։

---

—Բարո՛վ, հազար բարի, գալուստդ բարի, Սաքա՛ն, ասաց տէրտէրը տուն մտնելուն պէս։

Սաքանը թախտից իջաւ, տէր հօր աջն առաւ։ Բոլորեքեանք տեղաւորւեցան թախտի վրայ։ Օղին սրւակը թերախորով ձուների հետ Բագուից բերած մատուցարանում մէջ տեղ եկաւ։ Սաքանը օղին ածեց և տէր հօրը համեցէք արաւ։

—Աստուած կեանքդ երկար անի, բաժակը ձեռին օրհնեց տէր-Մարկոսը, բարով ամեն անգամ օտարութիւնից այդպէս անվտանգ տուն գաս. Աստուած էլ աւել խելք, շնորհք, իմաստութիւն տայ։ Մկրտո՛ւմ, բարով տղիդ պսակենք. պատրաստւի՛ր, քեզ պիտի պարեցնեմ, ասաց ու խմեց ընչացքը ծծելով։

Բաժակը պտուտ եկաւ չորս բոլորը, ամեն մէկը իւր բաժին օրհնանքը տալով Սաքանին։

—Սաքա՛ն, Բագուից սկի չես պատմում. ախր գնացիր օտարութիւն չորս, հինգ տարի մնացիր, աշխարհք տեսար, մեզ նման ամեն բանից զուրկ չես, մի պատմի՛ր գոնէ լսելով իմանանք, թերախորովը խմելով հարցրեց տէր-Մարկոսը։

—Տէրտէ՛ր, այնքան բան եմ տեսել, որ եօթը օր, եօթը գիշեր նստեմ պատմեմ չի վերջանայ։

—Էլլի դէսից դէնից պատմի՛ր, բոլորը չեմ ասում խօ։

—Տե՛ղ, տե՛ղ նա է ոչ թէ մեր գիւղը, մենք մեր գիւղում կարծում ենք թէ էլ ուրիշ տեղ չը կայ, ասաց Մկրտում ապէրը։

—Տէրտէ՛ր, սկսեց Սաքանը, որ աշխարհքս պըտտես՝ այնպէս մեծ, փողը շատ քաղաք չես գտնի. է՛, որ շատ անգամ կանգնում ես ծովի մօտ, մնում ես հէնց զարմացած. ապրանքը ապրանքի ետեւից չի կտրւում, գալիս է հա գալիս. որքան ներս է մտնում, այնքան էլ դուրս են հանում. ծո՛վ է ծո՛վ, ինչ քաղաք։

—Ի՞նչ տեսակ ապրանք են բերում, հարցրեց տէր հայրը։

—Ինչ տեսակ որ ասես. աշխարհիս ամեն ծայրից էլ այնտեղ ապրանք են բերում և այնտեղից էլ նաւթ առնում, տանում իրանց երկիրը։ Ո՛րքան նաւթ են տանում և ո՛րքան են աշխատում՝ սկի կարելի է հաշւով ասել։ Մի տեղ որ ծխից երկինքը միշտ թխպած լինի, տես ո՛րքան գործարաններ կը լինի. տես որքան են իրանք աշխատում, որ բանւորներին այնքան առատ են վարձատրում. նրանց համար փող՝ մի և նոյնն է հող։

—Այդ բոլոր գործարանները հայերի՞ է։

—Ոչ, հայի էլ կայ, ռսի էլ, թուրքի էլ։

—Իսկ բանւորները հայե՞ր են։

—Հայ, ռուս, թուրք լիքն են և լաւ փող են վերցնում։

—Հապա որ այդպէս է՝ մեր տղայքը էլ ինչո՞ւ են տաւար պահում, հողը վարում, էշ կենում, էշ մեծանում, հենց գնան այնտեղ էլի. թէ լաւ փող կը ստանան, ինչպէս դու ես ասում և թէ աշխարհք կը տեսնեն, մարդավարութիւն կը սովորեն. տեսնելով կը լինի, գիւղում մնալով ի՞նչ կը լինի. գիւղացին ինչ է իմանում ժամը ի՞նչ է, քահանան ի՞նչ է. կը գնան, կը տեսնեն՝ թէ ինչպէս նրանք ժամասէր, քահանայասէր են, կը վերադառնան և նոյնը իրանք կ'անեն, դեռ ուրիշներին էլ կը խրատեն։ Ա՛յ Սաքանը, ես իմ Աստուածը, նա, ես գիտեմ, այժմ աւելի ժամասէր, աւելի քահանայասէր է, քան թէ առաջ էր՝ երբ տաւար էր պահում ու վար անում։

—Տէրտէ՛ր, բոլորը դէն, քահանան ի՞նչ է, որ տեսնես՝ եպիսկոպոսի է հաւասար նրանց մէջ, ի՞նչ տեսակ տներում են կենում, ի՞նչ նստել վեր կենալ ունին, ոտով չեն մանգալիս՝ կառքով, ծառաները յետևները գցած։ Բագուցիք ի՞նչպէս են վարձատրում քահանային,—առանց համարելու փողը ջէբներից հանում, քահանայի սուրբ աջը առնում և այնպէս ծածուկ են տալիս, որ իրանց ձախ ձեռքը անգամ չի իմանում։ Քահանան մի նշան է օրհնում, հարիւր մանէթ է վերցնում. սրա նման էլ ուրիշ բաները։

—Բա՛ որ ես ասում եմ. մինչև մարդ մարդա-

վարութիւն չը սովորէ, ի՞նչ կ՚իմանայ ժամի նշանակութիւնը, քահանայի գինը. մի նշան է օրհնում մի քանի րոպէում, հարիւր մանէթ է ջէբը դնում, իսկ մենք, որ ամբողջ տարին քանի քանի մկրտութիւն, նշան, պսակ ենք անում՝ հարիւր մանէթ վերցնո՞ւմ ենք։ Դէ ե՛կ համ ապրի՛ր, համ էլ քահանայութիւն արա՛։ Ա՛յ, քահանայ լինես Բագու և ոչ թէ գիւղում։ Չէ՛, մեր գիւղացիները շատ յիմարութիւն են անում, չեն թողնում իրանց որդկերանց տանից դուրս գան, գնան փող բերեն, մարդավարութիւն սովորեն, որ գիւղն էլ մի քիչ շնորհք ընկնի, թէ չէ այսպէս ապրուստ չի լինի. ի՞նչ ենք մենք, ի՞նչ, ինչի՞ ենք նմանում, մեզ էլ է Աստուած ստեղծել, քաղաքացուն էլ, մենք կարո՞ղ ենք մարդ անունը համարձակ տալ մեզ. չէ, հէնց այսօրւանից ես կը քարոզեմ բոլոր ծնողաց, որ իրանց որդկերանց ուղարկեն Բագու. բաւական է որքան քնած մնացինք։

Երկրորդեցին օղին։ Տէր-Մարկոսը Բագուայ քահանաների մասին էր մտածում և երանի տալիս նրանց. ի՞նչպէս նա ևս կը ցանկանար մշակների հետ գնալ այնտեղ քահանայ լինել կամ թէ չէ հէնց ոտը մի գցել այնտեղ. նա մտածում էր. «Ես ծերացել եմ, չեմ կարող էլ այսուհետև օտարութիւն գնալ, թող գիւղացի տղաները գնան և հարուստ վերադառնալով մենք էլ այնպէս կը վարձատրուենք, ինչպէս մեր եղբայր քահանաները Բագւում։

—Այսքան էլ անխելքութիւն կը լինի, որ մենք

ունինք, ասաց ուրախ ուրախ Ստեփանը. մեր գիւղում քնած ենք, իսկ ուրիշները աշխատում հա աշխատում են։

Ուրախ էր Ստեփանը, որովհետև գաղափարակիցներին գտել էր. իւր մտադրութիւնը կատարել անհրաժեշտ էր համարում, որովհետև տեսնում էր աչքի առաջ՝ թէ ի՛նչպէս ժողովրդի արթուն հոգին քարոզում էր տաւարն ու գութանը թողնել, շտապել քաղաքները, բերել փող և մարդավարութիւն, փոխել գիւղացու կեանքը և լինել քաղաքացի։ Տէր-հայրը թւում էր նորա աչքերին ինչպէս ժողովրդի բարեացակամը, նորա շահերին պաշտպանը և լուսաւորութեան առաջնորդը։ Նա տեսնում էր տէր-Մարկոսի ձեռին մի բոցավառ լապտեր, որ լուսաւորում էր ամբողջ գիւղը, և գիւղացիները այնպէս էին լոյսի վերայ գալիս, ինչպէս ոչխարները աղի վերայ։

—Օրհնեա՛լ լինիս, Ստեփա՛ն, լաւ ասացիր. Սաքանն է ասում թէ այնտեղ մարդիկ ոչ քուն ունին և ոչ դադար, միշտ գործում, աշխատում են, թէ իրանք շահւում և թէ իրանց քահանաները. որ նրանք մի նշան օրհնելով հարիւր մանէթ չ՚առնեն բա ե՛ս պիտի առնեմ մեր գիւղ տեղը, որ բացի տաւար պահելուց ու վար անելուց ոչինչ չը գիտէք։ Մի մարդ, որ տարին տասներկու ամիս տաւարի հետ լինի, ախր նրանից էլ ի՞նչ կարելի է պահանջել, նորա մարդավարութիւնը էլ ի՞նչ կը լինի. առակը անխտակէ

է՝ «էշը ի՞նչ գիտէ նուշը ի՛նչ է»․ կամ թէ չէ ուր մեզ չեն յարգում, մեզ ինչպէս քահանայ չեն ընդունում, ախր ի՞նչպէս կարող ենք մենք աւելի պահանջ ունենալ․ սատ է՝ «էշի քացուց բեղամաղ մի՛ լինիր»։ Սիրելի՛ք, ինչպէս մեր հայրերն են եղել, այնպէս էլ ուզում ենք մենք լինել, մի աչքներս հեռու չենք դարձնում, տեսնենք եօթը սարի, եօթը ձորի յետև ի՞նչ են անում, որ մենք էլ սովորենք և ըստ այնմ մեր կեանքը բարեփոխենք․ բաւական է, այսքան էլ համբերութի՛ւն կը լինի․ դուրս եկէ՛ք ձեր կռճերի տակից, առէ՛ք ճանապարհորդի պարկը, Աստուծոյ անունը տւէ՛ք, գնացէ՛ք այնտեղ՝ ուր կայ շատ փող, ուր կան մարդիկ, որոնք ժամասէր, քահանայասէր են, սովորեցէ՛ք նրանցից քրիստոնէութիւնը, դարձէ՛ք ձեր տգէտ ու թշւառ ծնողաց մօտ, որ ծերութեան ժամանակ հասկացնէք նրանց այն ճանապարհը, որ տանում է հանդերձեալ երանաւէտ կեանքը։ Ես այս մենակ այստեղ չեմ ասի, տներում, եկեղեցում կը քարոզեմ, թող ականջները լաւ բանան, բարին չարից զանազանեն, անեն այն ինչ որ դէպի Աստուծոյ ճանապարհն է տանում։ Ես ինձ համար մեծ մեղք կը համարեմ, որ, երբ տեսնում եմ գիւղացին փոխանակ աջ գնալու՝ ձախ է գնում, ճանապարհին շատ տեղ սայթաքելով՝ եթէ չը զգուշացնեմ նրանց ասելով․ «Սիրելի՛ ժողովուրդ, գնացէ՛ք աջ, այնտեղ կան ոսկու կոյտեր, այնտեղ կայ քրիստոնեայ բնակիչ, ձախ մի՛ շեղւէք, կ՚ընկնէք մութ խորխորատ՝ ուր կեղտոտ տա-

ւարին պիտի ծառայէք, ուր ցեխոտ գութանի յետեւից պիտի քաշքաշ լինէք»։

Մկրտումի տունը կենդանացել էր. հարեւանները թափուել, լցուել էին. քահանան օղին խմած ոգեւորուել էր, և գիւղացիներին օգուտ էր ուզում տալ՝ աչքի առաջ ունենալով իւր սեպհական օգուտը, այն է՝ մօտ ապագայում իւր առատ վարձատրութիւնը։ Գիւղացիների պէս նա էլ մոքումը կորկոտ էր գցել, Բագու ուղարկած երիտասարդներին համարում էր տոկոսով տուած փող։

Ոգեւորուել էին գիւղացիները, ուրախական բացականչութիւններ էին հանում. այս ու այնտեղից լսւում էր. «Բերանի՛դ, այդ սուրբ բերանի՛դ մատաղ, որ մեզ համար հոգս ես անում, դու այդ քո բարութեամբ արքայութիւնը ժառանգեցիր»։ Էլ ուրախութիւնից ոչ ոք չէր կարողանում խօսել։ Ուրաքանչիւրը իւր առանձին մտածողութիւնը այժմ ընդհանուրի մտածողութեան հետ ներդաշնակ և նման տեսնելով՝ աւելի և աւելի ոգեւորւեցաւ. մէկը եթէ որոշել էր մէկ տղային ուղարկել, այժմ երկուսին, երեքին էլ միանգամից է ուզում ուղարկել. նոքա լաւ տեսնում էին թէ Սաքանը ի՛նչպէս մաքուր, ի՛նչպէս լաւ հագուած մի քաղաքացու տղայ է դարձել. նորա բերած մատուցարանը, որ սիւնի ճակատից էին կախել օղին խմելուց յետոյ, կանաչ-կարմիր փոքրիկ անդուկները, որ պատի տակումն էին շար գցել և վերջապէս հօր քթախոտի տուփը, որ հանգիստ չէր

գտնում Մկրտում ապօր ձեռքին, — այս բոլորը տեսնելուց և տէր Հօր ասածները լսելուց յետոյ՝ նրանց Հայեացքը անխօս ասում էր. «Էլ ի՞նչ ենք կանգնել, այսուհետև էլ սպասելը չի բռնի, դէպի առա՛ջ, դէպի ոսկու կոյտե՛րը, դէպի աւետեաց երկի՛րը»։

Գ.

Ստեփանը և Սաքանը փոքրուց էլ, մինչև իրանց կնքահայրութիւնը, միմեանց շատ մօտ են եղել։ Սաքանը իւր ընկեր տղաների մէջ համարւում էր մի խորամանկ, խեղկատակ տղայ. թէև չափից դուրս սուտասան և կեղծաւոր էլ էր, բայց նա այնպիսի ճարպիկութեամբ էր ծածկում, որ ոչ ոք չէր կարողանում իմանալ թէ Սաքանը ղո՞րդ է ասում թէ սուտ, կեղծում է թէ ոչ։ Ընկեր հարևանները օձիք էին պատռում նրանից. պառաւ կանայք նրան համարում էին «օձը բնից հանող», բայց իւր ընկեր տղաները նրան սիրում էին, որովհետև միասին հաւաքուած ժամանակ, երբ մտադրում էին մի բան անելու, ինչ դժուար, խորամանկութեան, խելքի բան էր լինում, նա էր միայն յաջողութեամբ կատարում՝ ուրիշ ոչ ոք։

Գալով Ստեփանին, Ստեփանը մի դիւրահաւան, անկեղծ, սրտոտ և անձնավստահ տղայ էր. բոլորեքեանք էլ նրան կը հաւատային. «նորա սուտը ուրիշի ղորդից ղորդ է», — այսպէս էին ասում իւր ընկերները։ Ոչ մի պառաւ կին նորա վերայ չէր բարկա-

ցած, այլ ընդհակառակը միշտ օրհնում հա օրհնում էին, որ բարեյիշատակ է իւր մօր ու հօր համար։ Մի խօսքով, Ստեփանը Աստուծոյ օրհնած զաւակն էր։ Այսպէս քաջութեան և հաւատարմութեան կողմից նշանաւոր էր իւր ընկերների մէջ Ստեփանը, իսկ խորամանկութեան կողմից Սաքանը։ Այժմ երկուսն էլ, որ երեսուն տարուն հասուհաս են, դարձեալ նոյնն են. մէկը կեանքի մէջ չի փոխուել, էլի այն պարզսիրտ, դիւրահաւան և քաջն է ինչ որ առաջ էր, իսկ միւսը Բագու ընկնելով աւելի էր եփուել խորամանկութեան ու խարդախութեան մէջ, շահասիրութիւնը նորա մէջ ամեն ինչ խեղդել, սպանել էր. Նա պատրաստ էր ամեն սրբութիւն ուրանալ, ոտի տակ տալ շահի համար. կեղծաւորութիւնը վերին աստիճան էր հասցրել. չորս, հինգ տարի մնալով Բագու՝ սովորեց այն բոլոր բաները, ինչ որ հարկաւոր են մի խորամանկ, կեղծաւոր և շահասէր մարդու։ Սաքանը Բագու օրերն էր համարում, թէ ե՛րբ պիտի իւր սրտի ցանկացած գումարը ձեռք բերի. և երբ այդ փափագին հասաւ, սկսեց մտածել թէ ի՛նչպէս գործադրի այդ գումարը, որ մէկին մէկ փող աշխատի հանգիստ իւր տանը նստած. Նա լաւ տեսնում էր, որ չորս, հինգ տարի շարունակ մշակութիւն անելով, այլ ևս դժուար կը լինէր կրկին մշակութիւն անել. փերեզակութիւնը ամենայարմարը գտաւ և, Բագուից ճանապարհուելիս, գնեց մի հարիւր ռուբլու մանրունք, ճանապարհ ընկաւ իրանց գիւղը. Նա մըտ-

քումը հաստատ «կորկոտ էր ցցել», որ տանը ծալապատակ նստած, առանց մէջք կոտրելու տասնապատիկ ուտել կ՚աշխատի։ Այժմ գիւղումն է. Նա իւր ապրանքի գները լաւ բերան է արել, վճռել է փողով չը ծախել, այլ փոխել ցորենի, գարու և այլ բերքերի հետ. Նա իւր օգուտը աչքի առաջ ունենալով այդ արաւ, և միևնոյն ժամանակ գիւղացու համար հեշտացրեց առուտուրը։

Ստեփանը այդ բոլորը գիտէր. Սաքանն էր ասել, յայտնել էր նոյնպէս, որ այդ առուտուրից չափից դուրս մեծ աշխատանք կ՚ունենայ և եթէ ուզում է կարող է ինքն էլ ընկերանալ, միշտ Բագուից ապրանք ուղարկել։

Ստեփանը հաւատալով Սաքանի ամեն ասած ու պատմածին նեղանալով ասաց.

—Ամմա՛ ինչ տղայ ես, վեր կացիր սուս ու փուս, առանց իմաց տալու մի քանի ընկերներով գնացիր Բագու, աշխարհիս հարստութիւնը բերիր, հիմա կուռդ գլխատակովդ դրած կարող ես ապրել, մեզ նման չես հո՛ւ։

—Ստեփա՛ն, փա՛ռք Աստուծոյ, Բագուն իրան տեղն է, չը փախա՞ւ հու, ինչ կայ որ. ղորդն ասած՝ վախեցանք քեզ յայտնել, դու էլ իմաց տաս ծնողներիդ, այն ժամանակ էլ մեր գնալը չէր բռնիլ, մեր հայրերը կ՚իմանային, էլ կը թողնէի՞ն որ մարդ ոտը ոտի առաջ դնի. լաւ արինք մենք գնացինք և ձեզ համար հաստատ տեղեկութիւն բերինք. լաւ կը լի-

ներ, որ միասին վեր կենայինք, գնայինք ու վա՜յ թէ այնպէս աշխատանք չը լինէր, ինչպէս մենք տեսանք, այն ժամանակ ի՞նչ կը լինէր մեր դրութիւնը։

—Հա, շա՛տ լաւ էք արել, ղորդ ես ասում, Սաքա՛ն. Սաքա՛ն, ասում ես ամիսը երեսուն, քառասուն մանէթ աշխատանք կարող եմ վերցնել. աստ՛ մի երկու տարւայ մէջ լաւ փող կը շինեմ էլի, և կ՚ընկերանանք, այստեղ խանութ կը բանանք. հը՛, ի՞նչ ես ասում այս խելքին։

—Լա՛ւ ես մտածել, ես իմ Աստուածը, քեզ հետ որ չ՚ընկերանամ, էլ ո՛ւմ հետ պիտի ընկերանամ. միտդ է, հէնց պատիկուց էլ ընկեր ենք եղել։ Դու Բագուից ապրանք կ՚առնես կ՚ուղարկես, իսկ ես այստեղ կը ծախեմ, դու տես ի՛նչպէս աշխատանք կը վերցնենք. մեր փողին էլ փող չի հասնիլ, մի քանի տարուց յետոյ դու էլ կը գաս գիւղը և ինձ նման կ՚ապրես։ Ստեփա՛ն, այս քեզ եմ ասում հա՛, չը լինի թէ բերանիցդ հանես, ուրիշները հասկանան, ձեռներիցս կ՚ընկնի հա՛։

—Խելքս թռցրե՛լ եմ ինչ է, ինչո՛ւ պիտի ասեմ. դու միամիտ կացի՛ր, խօսքը՝ խօսք է, տղայ եմ հէնց ծախի՛ր, ես այնտեղից ապրանքը ապրանքի տակից չեմ կտրիլ։ Շատ լաւ եղաւ է՛, չես իմանում, հաւատացած եմ որ շատ շուտով պիտի հարստանանք. տօ հարստութի՛ւն, հարստութի՛ւն, առանց հարստութեան ի՞նչ ենք մենք, ո՛վ է նայում մեր կղակին, ո՛վ է մեր խօսքը չւանի դնում, դու այն ժամանակը տես ի՞նչ կը լինենք։

թեան աշխարհի շէմքը կոխեցին, ուրախութիւնը լի ու լի է՝ մտան հոյակապ ապարանքները։ Մարդու միտքը մի ակնթարթում ինչե՛ր չի ստեղծագործում, ի՜նչ ապարանքներ ու դարպասներ չի կառուցանում։ Նոցա ապարանքները թէև բազմայարկ, շքեղ, զարդարուն, բայց մի վայրկեանում ստեղծագործուեցան և հէնց վաղը պիտի տիրանան և երջանիկ լինին. բայց մի՞թէ չեն յուսահատուի վաղը իրանց խաբուած տեսնելով.—վաղը դարձեալ աւելի բարդ, աւելի զարդարուն կը ստեղծագործէ նոյն ամրոցները միւս վաղուայ համար. այսպէս էգուցները կ՚ընթանան աննկատելի կերպով և իրանց ամուսինների ասածին պէս՝ մի քանի տարին գլխարկի մի քանի անգամ շուռ տալու չափ կը տևի։

## Զ.

«Տղա՛յք, ձեզ եմ բաշխում Բագուն, տե՛ղ, տե՛ղ սա է, է՛», դարձաւ ուրախ ուրախ Ստեփանը իւր ընկերներին, երբ Բագու հասան։

Քսան հոգի՝ մեծ ու փոքր՝ պլշած աչքերով և դէմքով շտապում էին Ստեփանին հասնել, որը, ինչպէս յաղթանակը տարած զօրապետ, սրի տեղ մահակը ձեռին՝ խաչընդոտները յաղթահարելով տիրապետել էր քաղաքը, մտել ներս, ուրախ և սիգաքայլ առաջ էր ընթանում։

Օրը կիրակի էր, առաւօտեան ժամի տասը։ Գիշերը աշնանային էր. մանրամաղ անձրևը փոշին